Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ



1369
53

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33-86։


---

# ԿԱՏԱՐԵՆՔ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ

ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի փետրվարյան պլենումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» իր որոշման մեջ նշեց, որ մեր երկրի գյուղատնտեսության ամենաարագ վերականգնման ու վերելքի գործին տրվում է առաջնակարգ նշանակություն, որպես ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության հաջող զարգացումը և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավումն ապահովող անհրաժեշտ պայման։

Այդ որոշումը, որ սոցիալիստական գյուղատնտեսության նոր հուժկու վերելքի և կոլխոզների, սովխոզների ու մեքենատրակտորային կայանների հետագա կազմակերպական-տնտեսական ամրապնդման ծավալուն ծրագիր է, մեր երկրի կոլխոզային գյուղացիությանը և ամբողջ աշխատավո-

րությունն ընդունեց բուռն խանդավառությամբ, աշխատանքային ակտիվության նոր վերելքով:

Արձագանքելով այդ որոշմանը Ալթայան երկրամասի (Արևմտյան Սիբիր) կոլխոզնիկները ընկեր Ստալինին ուղղված իրենց նամակի մեջ պարտավորվեցին գարնանացան ցորենի ցանքատարածությունը երկրամասում 1947 թվականին ավելացնել նախորդ տարվա համեմատությամբ 300 հազար հեկտարով, է՛լ ավելի բարձրացնել իրենց դաշտերի բերքատվությունը:

Միևնույն ժամանակ Ալթայի երկրագործները դիմեցին գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, կոչ անելով կազմակերպել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին Համամիութենական սոցիալիստական մրցություն՝ երկրագործության և անասնապահության հետագա արագ վերելքի համար, պետության հանդեպ իրենց պարտավորությունները ժամկետից շուտ և բարձրորակ կատարելու համար, այն բանի համար, որ յուրաքանչյուր կոլխոզ, սովխոզ, շրջան ստանա գյուղատնտեսական կուլտուրաների առատ բերք, հարազատ պետությանը տա ավելի շատ հացա-



հատիկ, կարտոֆիլ, բանջարեղեն, կաթնամթերք:

Ալթայցիների այդ հայրենասիրական կոչը արտահայտում էր ամբողջ սովետական գյուղացիության իղձերն ու շահերը և ջերմ արձագանք գտավ գյուղատնտեսության բոլոր աշխատողների մեջ: Ձեռնամուխ լինելով հետպատերազմյան նոր հնգամյակի երկրորդ տարվա գյուղատնտեսական աշխատանքներին, Սովետական Միության ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի կոլխոզնիկները, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները նամակներով դիմում են ընկեր Ստալինին և ստանձնում կոնկրետ պարտավորություններ:

Այժմ արդեն երկրի հազարավոր կոլխոզներ, սովխոզներ ու ՄՏԿայաններ Համամիութենական սոցիալիստական մրցության դրոշի ներքո եռանդուն պայքար են ծավալել գյուղատնտեսության հետպատերազմյան արագ վերելքն ապահովելու, Մեծ Հոկտեմբերի 30-ամյակը արժանավայել դիմավորելու համար:

Սովետական Հայաստանի կոլխոզնիկները, կոլխոզնիկուհիները, ՄՏԿ-ների ու սովխոզ-

ների աշխատողները և գյուղատնտեսության մասնագետները ընկեր Ստալինին ուղղած իրենց նամակի մեջ խոսք տվին, կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի նշած ձեռնարկումները ամեն ջանք գործադրել այս տարվա գարնանացանը, ցանքերի մշակումն ու բերքահավաքը բարձրորակ կատարելու, Հայաստանի գյուղատնտեսության բոլոր ճյուղերում նոր վերելք ստեղծելու համար և պարտավորվեցին պետության հանդեպ իրենց պարտավորությունները հացամթերումների գծով կատարել մինչև 1947 թ. նոյեմբերի 1-ը։

Այդ խոստումը կատարելու համար Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողներն ունեն բոլոր հնարավորությունները։ Կոլխոզային կարգը վերափոխել է հայկական գյուղի դեմքը, չտեսնված ծաղկման հասցնելով Հայաստանի գյուղատնտեսությունը։ Սովետական իշխանության տարիներին, բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարության շնորհիվ, Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հետամնաց ու քայքայված վիճակից բարձրացել,



ներկայումս դարձել է առաջավոր տեխնիկայով զինված կուլտուրական գյուղատնտեսություն։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը պատվով կատարեց իր պարտքը Հայրենիքի հանդեպ։ Պատերազմի ժամանակվա դժվար պայմաններում Ռեսպուբլիկայի կոլխոզներն ավելացրին ցանքերի տարածությունը, բարձրացրին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում Հայաստանի կոլխոզնիկները և գյուղատնտեսության աշխատողները եռանդուն պայքար են ծավալել գյուղատնտեսության բնագավառում Ստալինյան նոր հնգամյակը հաջողությամբ կենսագործելու համար։ Նախապատերազմյան 1940 թ. համեմատությամբ 1946 թվականին ցանքատարածության աճը կազմեց— հացահատիկային կուլտուրաներինը՝ 5,4 տոկոս, ծխախոտինը՝ 70 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 90 տոկոս, կրկնապատկվեցին կարտոֆիլի ու բանջարեղենի ցանքերը։ Խոշոր եղ-

ջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 5,4 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 21,8 տոկոսով։ Կոլխոզների եկամտաբերությունն այդ ժամանակամիջոցում աճեց 219 տոկոսով, զգալիորեն բարձրացավ կոլխոզնիկի աշխօրի արժեքը։

Անցյալ տարի Ռեսպուբլիկայի կոլխոզներն աճեցրին գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք. այսպես օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի «Կարմիր աստղ» կոլխոզն ստացավ հեկտարից միջին հաշվով 117 փութ ցորեն, Նոր-Բայազետի շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզը՝ հեկտարից 80 փութ, իսկ նույն կոլխոզի Լենինի շքանշանակիր Վանո Ղարիբյանի բրիգադան 29 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից 175 փութ ցորեն, Նոյեմբերյանի շրջանի «Նոր կյանք» կոլխոզի Լենինի շքանշանակիր Մուշեղ Մակիչյանի բրիգադան՝ 12 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից 160 փութ ցորեն։

Ավելի բարձր ցուցանիշների հասան Թալինի շրջանի Բուդյոննու անվան կոլխոզի օղակավարուհիներ՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանը և



Լենինի շքանշանակիր Օֆիկ Մաղոյանը, որոնք 10 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստացան առաջինը 247 փութ և երկրորդը 237 փութ ցորեն։

Բամբակի բարձր բերքատվությամբ աչքի ընկան Արտաշատի շրջանի կոլխոզները։ Ն. Դվինի կոլխոզի Խաչատուր Ավագյանի բրիգադան հեկտարից ստացավ 168 փութ հումքբամբակ, իսկ նույն կոլխոզի Միրուշ Քոչարյանի օղակը 6 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից 252 փութ բամբակ։

Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, Սովետական Հայաստանի կոլխոզնիկները և գյուղատնտեսության աշխատողները ընկեր Ստալինին ուղարկած իրենց նամակի մեջ պարտավորվեցին այս տարի աճեցնել հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների, պտուղների, կարտոֆիլի ու բանջարեղենի էլ ավելի բարձր բերք, ստանալ ավելի մեծ քանակությամբ անասնաբուծության մթերքներ, առանձին ռեկորդներից անցնելով գյուղատնտեսության ընդհանուր վերելքի։

Դաշտավայրային գոտու առաջավոր շըր-

ջաններն ու կոլխոզները պարտավորվել են աշնանացան ցորենի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 110—180 փութ բերք, ըստ որում Հոկտեմբերյանի շրջանը՝ հեկտարից 120 փութ, Էջմիածնի շրջանը՝ 115 փութ, իսկ առանձին առաջավոր բրիգադաներ խոստացել են հասնել ավելի բարձր բերքատվության. այսպես օրինակ, Էջմիածնի շրջանի 17-րդ Պարտհամագումարի անվան կոլխոզի Բաղդասար Սարդսյանի դաշտավարական բրիգադան պարտավորվել է ստանալ հեկտարից 183 փութ, Արտաշատի շրջանի Միկոյանի անվան կոլխոզի Սիսակ Հարությունյանի բրիգադան՝ հեկտարից 180 փութ բերք։

Աշնանացան ցորենի է՛լ ավելի բարձր բերք են խոստացել ստանալ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության անվանի մարդիկ։ Թալինի շրջանի Բուդյոննու անվան կոլխոզի՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի օղակը պարտավորվել է աճեցնել հեկտարից 250 փութ հացահատիկի բերք, Նոր-Բայազետի շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզի՝ Լենինի շքանշանակիր Վանո Ղարիբյանի բրիգադան պարտավորվել է ստանալ հեկտարից 180 փութ, նույն շրջանի Բադիկի անվան կոլխոզի Խաչիկ Տո-



նոյանի բրիգադան՝ հեկտարից 168 փութ ցորենի բերք։

Այդ գոտու շրջանների առաջավոր կոլխոզները պարտավորվել են ստանալ հեկտարից 70—110 փութ, իսկ բոլոր կոլխոզները՝ աշնանացան ցորենի ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով 70 փութ բերք։

Գարնանացան ցորենի գծով նախալեռնային գոտու շրջանների առաջավոր կոլխոզները խոստացել են ստանալ հեկտարից 50—60 փութ բերք, երբ բերքատվության պետական պլանը սահմանված է հեկտարից 43 փութ, ըստ որում Կոտայքի շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզը՝ հեկտարից 66 փութ, Միկոյանի շրջանի Ստալինի անվան կոլխոզը՝ հեկտարից 63 փութ։

Բարձր լեռնային գոտու (Ախուրյանի, Բասարգեչարի, Մարտունու և այլ շրջանների) կոլխոզները պայքարում են հեկտարից 60—75 փութ գարնանացան ցորենի բերք ստանալու համար։

Բանջարեղենի և առաջին հերթին կարտոֆիլի բարձր բերք են խոստանում աճեցնել մեր Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ— Ստեփանավանի շրջանը՝ հեկտարից 720

փութ, Կրասնոսելսկի շրջանը հեկտարից 700 փութ, Շամշադինի շրջանի Վերին Կարմիր Աղբյուր գյուղի կոլխոզը հեկտարից 850 փութ, իսկ նույն շրջանի Մոլոտովի անվան կոլխոզի Ս. Մուսինյանի բրիգադան պարտավորվել է ստանալ հեկտարից 1400 փութ կարտոֆիլի բերք։ Ռեսպուբլիկայի բոլոր կոլխոզները խոստացել են յուրաքանչյուր հեկտարից ստանալ միջին հաշվով 600 փութ կարտոֆիլ։

Ռեսպուբլիկայի բամբակագործները, ծխախոտագործները, ճակնդեղագործները, շերամապահները, մտնելով Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, պայքարում են բերքատվության բարձր ցուցանիշների համար։ Արտաշատի շրջանի Ն. Դվինի գյուղի կոլխոզի Սիրուշ Քոչարյանի օղակը առաջնորդին խոսք է տվել ստանալ հեկտարից 390 փութ, Հոկտեմբերյանի շրջանի Երրորդ Ինտերնացիոնալի անվան կոլխոզի Հոկտեմբերիկ Քոլոզյանի օղակը՝ 300 փութ բամբակ, իսկ Ռեսպուբլիկայի բոլոր բամբակացան կոլխոզները պայքարում են հեկտարից միջին հաշվով 90 փութ հումք-բամբակ ստանալու համար, երբ բամբակի



բերքատվության պետական պլանը սահմանված է հեկտարից 84 փութ։

Ծխախոտի տերևի հանձնման պետական պլանը սահմանված է 6.100 տոննա։ Ռեսպուբլիկայի առաջավոր կոլխոզները պարտավորվել են ստանալ հեկտարից 54—90 փութ ծխախոտի բերք, իսկ առանձին օղակներ՝ մինչև 150 փութ, 1947 թվականին ծխախոտի պլանտացիաների տարածությունն ընդարձակել 1000 հեկտարով և պետությանը հանձնել 6400 տոննա ծխախոտի տերև։

Շաքարի ճակնդեղի մշակության գծով լուրջ պարտավորություններ են ստանձնել Ախուրյանի, Կիրովականի, Սպիտակի շրջանների կոլխոզները, ընդ որում Սպիտակի շրջանի Դիմիտրովի անվան կոլխոզի Աղասի Հովհաննիսյանի բրիգադան պարտավորվել է ստանալ հեկտարից 450 ցենտներ շաքարի ճակնդեղ, իսկ Ախուրյանի շրջանի Ղարիբջանյանի անվան կոլխոզի Հեղուշ Նազարյանի օղակը տվել է ավելի բարձր խոստում— հեկտարից ստանալ 1000 ցենտներ ճակնդեղի բերք, Կույբիշևի անվան կոլխոզի Դուխո Խաչատրյանի օղակը՝ 800 ցենտներ։

Բարձր պարտավորություններ են ստանձնել Սովետական Հայաստանի շերամապահ-

ները, այգեգործները, անասնապահներն ու մեղվաբույծները։ Նրանք պարտավորվել են պետությանն ու բնակչությանը տալ ավելի շատ մետաքս, զանազան պտուղներ, խաղող, անասնաբուծության արտադրանք՝ կաթնամթերք, միս, բուրդ, մեղր։ Արտաշատի, Էջմիածնի, Բերիայի անվան, Աշտարակի, Միկոյանի շրջանների առաջավոր կոլխոզները և առանձին օղակներ խոստացել են ստանալ հեկտարից 500—1200 փութ խաղող։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումը առաջնահերթ կարևորություն տվեց անասնաբուծության անշեղ վերելքն ապահովելու, անասունների գլխաքանակն ավելացնելու և նրանց մթերատվությունը բարձրացնելու գործին։

Հայաստանի անասնապահները պարտավորվել են այս տարի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 7 տոկոսով, ոչխարներինը և այծերինը 16 տոկոսով, ձիերինը՝ 9 տոկոսով, խոզերինը՝ 60 տոկոսով, յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել միջին հաշվով 800 լիտրի, մայր ոչխարինը՝ 45 լիտրի։ Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների առանձին առաջավոր կոլխոզներ խոստացել են



յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցնել 1800—2000 լիտրի։

Հայաստանի մեղվաբույծները պարտավորվել են մեղվաընտանիքների քանակն ավելացնել 16 տոկոսով և յուրաքանչյուր մեղվաընտանիքից ստանալ 32 կիլոգրամ մեղր, պլանով սահմանված 30 կիլոգրամի փոխարեն։

Լուրջ պարտավորություններ են ստանձնել նաև Ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանների աշխատողները։ Նրանք առաջնորդին խոստացել են գերակատարել տրակտորային աշխատանքների պլանը, տրակտորային աշխատանքների ծավալը անցյալ տարվա համեմատությամբ այս տարի ավելացնել—գարնանավարինը՝ 13 տոկոսով, գարնանացան կուլտուրաների շարքացանը՝ 30 տոկոսով, ցելի վարը՝ 22 տոկոսով, կուլտիվացիան՝ 7 տոկոսով և աշնանացան հողերի վարը՝ 10 տոկոսով։

«Ղեկավարվելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան Պլենումի որոշումներով և Ձեր իմաստուն ցուցումներով, թանկագին առաջնորդ և ուսուցիչ, մենք ամեն ջանք գործ կդնենք, որպեսզի պատվով կատարենք Ձեզ տված խոսքը»— ասում են իրենց նամակի

մեջ Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները։

Առաջնորդին տված խոսքը լուրջ խոսք է, որը ինչ գնով էլ լինի պետք է կատարել— այսպես են դատում մեր սովետական մարդիկ։ Եվ այս բանը պետք է հասցնել Սովետական Հայաստանի բոլոր կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների, ՄՏ Կայանների ու սովխոզների բանվորների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների գիտակցությանը, եռանդուն պայքար ծավալել ցանքերի խնամքն օրինակելիորեն կազմակերպելու, սոցիալիստական դաշտերում առատ բերք աճեցնելու համար։

Ստանձնած պարտավորությունների հաջող կենսագործման լավագույն երաշխիքն է սոցիալիստական մրցության ամենալայն ծավալումը։ Գյուղատնտեսության առաջավորների օրինակով պետք է սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքել առանձին կոլխոզնիկների, օղակների, բրիգադների, կոլխոզների միջև։ Սոցիալիստական մրցության առաջավորների աշխատանքի փորձը պետք է տարածել ամբողջ կոլխոզում, պայքարել բարձր բերքի համար կոլխոզային բոլոր դաշտերում, հասնել բեր-



քատվության ընդհանուր բարձրացման։ Այդ է սոցիալիստական մրցության էությունը, որ սովորեցնում է մեզ ընկեր Ստալինը— հասնել լավագույններին, ձեռք բերել ընդհանուր վերելք։

Ներկայումս բոլոր բրիգադներում և օղակներում պետք է վերանայել ստանձնած պարտավորությունները, պարզել, թե ի՞նչ է արված և ի՞նչ է մնում անելու, երևան բերել նոր հնարավորություններ, որոնք կարող են ապահովել պարտավորությունների ոչ միայն կատարումը, այլև զգալի գերակատարումը։

Պարտիան և կառավարությունն ամենալայն օգնություն են ցույց տալիս կոլխոզային գյուղին, սոցիալիստական պետությունը մեծագույն հոգատարությամբ է շրջապատում սովետական գյուղացիությանը։ Սովետական ժողովուրդը կոլխոզային դաշտերի աշխատավորներին մեծարում է իբրև երկրի լավագույն մարդկանց, իբրև հերոսների։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, դրա փայլուն արտահայտությունն է։

Յուրաքանչյուր կոլխոզնիկ, ՄՏԿայանի ու սովխոզի աշխատող, որ անձնվիրաբար պայքարում է սոցիալիստական դաշտերի բերքատվության բարձրացման համար և աճեցնում է գյուղատնտեսական կուլտուրաների առատ բերք, կարող է արժանանալ կառավարական բարձր պարգևի— Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման, պարգևատրվել Լենինի, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշաններով ու մեդալներով, նայած իր մասնակցությանը բարձր բերքի համար մղվող պայքարին։

Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների նամակն ընկեր Ստալինին՝ գյուղատնտեսության հետագա վերելքի համար, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների և հումքի առատություն ստեղծելու համար Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողների պայքարի մարտական ծրագիրն է։

Կոլխոզային գյուղի բոլոր ուժերը գործի դնենք՝ առաջնորդին տված խոստումը պատվով կատարելու համար։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ Ի ՊԱՏԻՎ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 30-ԱՄՅԱԿԻ

Այս տարի լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակը, որ սովետական ժողովուրդը պատրաստվում է արժանավայել դիմավորել հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելով։

Հաղթականորեն ավարտելով Հայրենական Մեծ պատերազմը, մեր ժողովուրդն այժմ ձեռնամուխ է եղել երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա ավելի բուռն զարգացման վիթխարի խնդիրներին, որոնց կենսագործումը, որ կբարձրացնի ժողովրդի բարեկեցությունը, է՛լ ավելի կամրապնդի մեր հայրենիքի հզորությունը, պահանջում է ուժերի մեծ լարում, մեր էկոնոմիկայի բոլոր ռեզերվների լայն մոբիլիզացիա, արտադրական բոլոր հնարավորությունների հայտաբերում և

*դրանց լրիվ օգտագործումը սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու միջոցով։*

*Սոցիալիստական մրցությունը այն փորձված մեթոդն է, որի շնորհիվ կատարվել են ստալինյան հնգամյակների վիթխարի պլանները։ Սոցիալիստական մրցությունը, ինչպես նշել է ընկեր Ստալինը, դա միլիոնավոր աշխատավոր մասսաների առավելագույն ակտիվության հիման վրա սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդն է։*

*Ամփոփելով առաջին հնգամյակի կատարման արդյունքները, ընկեր Ստալինը ցույց տվեց, որ մեծ աշխատանքների այդ պլանի կենսագործումն ապահովեցին «ամենից առաջ բանվորների և կոլտնտեսականների միլիոնավոր մասսաների ակտիվությունն ու անձնվիրությունը, խանդավառությունն ու ձեռներեցությունը, մասսաներ, որոնք ինժեներա-տեխնիկական ուժերի հետ միասին հսկայական եռանդ զարգացրին սոցիալիստական մրցությունն ու հարվածայնությունը ծավալելու ուղղությամբ։ Տարակույս չի կարող լինել, որ առանց այդ հանգամանքի մենք չէինք կարողանա նպա-*



*տակին հասնել, չէինք կարողանա ոչ մի քայլ առաջ շարժվել»։*

*Այդ նույն փորձված մեթոդն է դրված նաև հետպատերազմյան հնգամյակի առաջադրանքների կենսագործման հիմքում։ Եվ երբ Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների բանվորները դիմեցին Սովետական Միության արդյունաբերության ու տրանսպորտի բոլոր աշխատողներին՝ կոչ անելով ծավալել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակին նվիրված համամիութենական սոցիալիստական մրցություն նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները մինչև Հոկտեմբերյան տարեդարձը ժամկետից շուտ կատարելու համար, այդ կոչը լայն արձագանք գտավ մեր երկրի բանվոր դասակարգի ու սովետական ինտելիգենցիայի մեջ։ Ներկայումս ֆաբրիկաներում ու գործարաններում, հանքահորերում և տրանսպորտում նոր ուժով բորբոքվել է համաժողովրդական մրցությունը՝ ի պատիվ պանծալի տարեդարձի։*

*Լենինգրադցիների կոչը մեծ խանդավառություն առաջացրեց նաև Սովետական Հայաստանի աշխատավորության մեջ։ Բոլոր արտադրական ձեռնարկություններում,*

հանքահորերում, տրանսպորտում բանվորներն ու ծառայողները նորանոր պարտավորություններ են ստանձնում մինչև Հոկտեմբերյան տարեդարձը արտադրական պլանների լրիվ կատարումն ապահովելու համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ առջևից են ընթանում մեր Ռեսպուբլիկայի պղնձարդյունաբերության աշխատողները։

Ալավերդու պղնձաձուլական գործարանի կոլեկտիվն այս տարվա հունվարին ՍՍՌՄ Գունավոր մետալուրգիայի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների մեջ նվաճեց երկրորդ մրցանակը, որը մինչև այժմ էլ պահպանում է։ Ստախանովականների և հարվածայինների թիվը գործարանում օրեցօր աճում է։ Գործարանում հայտարարվել էր կոնվերտորային բաժանմունքի հերթափոխային վարպետների կոնկուրս պղնձաձուլման ժամանակամիջոցը կրճատելու, ավելի շատ ձուլվածք տալու և էլեկտրոէներգիան ու օժանդակ նյութերը խնայելու համար։ Կոնկուրսը տվեց իր դրական



արդյունքը։ Հենց առաջին չորս օրում բաժանմունքի ձուլողները պղնձի ձուլման պլանը կատարեցին 114,3 տոկոսով, զգալի չափով պակասեց պղնձի պարունակությունը շլակի մեջ, ըստ որում հերթափոխային վարպետ Ա. Անտաշյանի մոտ այն հասցրված է 0,28 տոկոսի։

Շամլուղի և Ջանգեզուրի հանքագործները նույնպես լայն պայքար են ծավալել հանքաքարի ինքնարժեքն իջեցնելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Զարգացնելով սոցիալիստական մրցությունը, Ջանգեզուրի պղնձահանքերի հարստացուցիչ գործարանի կոլեկտիվը կատարեց իր խոստումը— Հաղթանակի օրվա՝ մայիսի 9-ի նախօրյակին ավարտեց պղնձի կոնցենտրատի արտադրության կիսամյա պլանը։

Սոցմրցմամբ ստանձնված պայմանն իրագործելու, այսինքն ամեն ամիս 50 գծային մետր հանքանցք փորելու նպատակով Ջանգեզուրի № 7 հանքում կազմակերպվել է կոմպլեկտային բրիգադա, որի բրիգադիր, երիտասարդ ստախանովական հանքափոր Ֆ. Գարդեն ու նրա օգնականն աշխատում են երկու բարդ հորատիչով, կիրառելով

անվանի բազմահորատիչ Յանկինի մեթոդը։

Պլանների կատարման և գերակատարման համար մղվող պայքարում աշխատանքի անձնվիրության օրինակներ են տալիս Զանգեզուրի անվանի հանքափորները՝ Լենինի շքանշանակիր, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Հ. Ներսիսյանը, որը կատարում է օրական 3–4 նորմա, իսկ ապրիլ ամսի պլանը կատարեց 540 տոկոսով, ինչպես նաև Լենինի շքանշանակիրներ՝ Ա. Խաչատրյանը և Լ. Ստեփանյանը։

Լենինգրադցիների կոչը ջերմորեն ընդունեցին Կիրովի անվան գործարանի բանվորները։ Կոնկրետ պարտավորություններ ըստանձնելով, գործարանի հիմնական ցեխերը կատարեցին արտադրական պլանը, ինչպես նաև զգալի չափով կրճատեցին նյութերի ծախսման գործակիցը, բարձրացրին աշխատանքի արտադրողականությունը և իջեցրին արտադրանքի ինքնարժեքը։ Այսպես օրինակ, գործարանում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը ապրիլ և մայիս ամիսներին գերակատարվեց։



Սոցիալիստական մրցության լայն ծավալումը, արտադրության նովատորների առաջավոր մեթոդների լայն կիրառումն իր դրական արդյունքներն է տվել Կիրովականի Մյասնիկյանի անվան և Երևանի ավտոդողերի գործարաններում։ Աշխատանքային տեղի ճիշտ կազմակերպման, բանվորական օրվա խտացման և մեխանիզմների ռացիոնալ օգտագործման միջոցով այստեղ վերջին ամիսների ընթացքում խիստ կերպով կրճատվեց հումքի գերածախսը, ըստ որում բնական կաուչուկինը 52,6 տոկոսից իջավ 1,6 տոկոսի, կորդինը՝ 42,5 տոկոսից՝ 4,8 տոկոսի։ Զգալի չափով նվազել է արտադրանքի խոտանը և բարձրացել առաջին տեսակի արտադրանքի տոկոսը։

Ռետինի արդյունաբերության մինիստրության Երևանի կարբիդի գործարանը, որը մի շարք ամիսների ընթացքում չէր կատարում արտադրական պլանը, ծավալելով սոցիալիստական մրցությունը հերթափոխություններում և բրիգադաներում, պայքարելով վառարանների արտադրողականության բարձրացման համար, մայիս ամսին պլանը կատարեց 107 տոկոսով, երկրին տալով վերջին տարիների ըն-

թացքում կարբիդի ամենաբարձր արտադրանք։

Ծավալված սոցիալիստական մրցումների մեջ նշանավոր է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Պավլական Ռուշանյանի բրիգադան, որը պլանները կատարում է 112 տոկոսով։ Հետ չեն մնում Աղասի Մանուկյանի բրիգադան, կրաքարի ցեխի բանվոր Հմայակ Թամազյանը, որն իր արտադրական պլանները կատարում է 165 տոկոսով։

Սոցիալիստական մրցումների մեջ աշխատանքի լավագույն օրինակներ են տալիս Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանի խառատ ընկ. Նովիկովը, որը կատարում է արտադրական երեք նորմա. Գուրգեն Ղասաբյանը, որը աշխատում է առանց խոտանի և հերթափոխային պլանը կատարում է 250 տոկոսով։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցումը բուռն վերելք է առաջացրել Ռեսպուբլիկայի երկաթուղայինների մեջ։ Օրեցօր ավելանում է լունինականների թիվը Երևանի, Լենինականի, Սանահինի երկաթուղային հանգույցներում։ Արդեն բոլորին հայտնի են լունինական մեքենավարներ Ա.



Ստեփանյանի, Գաբրիելյանի, Զորյանի (Երևան), Կ. Վարդանյանի, Օ. Զախալյանի (Լենինական) և ուրիշների անունները։

Արտադրական պլանների գերակատարման հետ միասին լայն ծավալ է ստացել աշխատանքի ռացիոնալիզացիան, արտադրության նոր մեթոդների կիրառումը։ Ռեսպուբլիկայի խոշոր շինարարություններից մեկում՝ Ալյումինշինում մի շարք ռացիոնալիզատորական առաջարկների կիրառումից ստացված միջոցների տնտեսումը կազմում է տասնյակ հազար ռուբլիներ։ Միայն շինարարության գլխավոր ինժեներ ընկ. Մելիքյանի առաջարկը տուֆաբլոկների պատրաստման ասպարեզում, ավելի 280 հազար ռուբլու տնտեսում։

Սոցիալիստական մեքենաշինության նովատոր՝ Ուրալի Կիրովի անվան գործարանի տեխնոլոգ Ալեքսանդր Իվանովի և Մոսկվայի «Պարիժսկայա Կոմունա» կոշիկի գործարանի ձևող բանվոր Վասիլի Մատրոսովի օրինակի լայն մասսայականացումը Կիրովականի քիմիական գործարանի բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների մեջ առաջ է բերել ռացիոնալիզատորական ուժեղ շարժում։ Առաջարկված ռա-

ցիոնալիզատորական ձեռնարկումների կիրառումը մեծ չափով նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ինչպես նաև հետ մնացող բանվորներին առաջավորների մակարդակին հասցնելուն։

Մեծ արդյունք տվեց էլեկտրոինժեներ Ընֆենջյանի և տեխնիկ Փուլյանի առաջարկած՝ կարբիդի վառարանի ավտոմատիկ ղեկավարման սարքը։ Այդ սարքը ճշգրտում է աշխատանքի տեխնոլոգիական պրոցեսը, կրճատում է բանվորական ուժի քանակը, տալով էլեկտրոէներգիայի զգալի տնտեսում։ Բանվորական ուժի մեծ տնտեսում է տալիս լավագույն ռացիոնալիզատոր և գյուտարար ընկ. Կարագյոզյանի տուֆ տաշող մեքենան, որը փոխարինում է մինչև 35 քարտաշի։

Մոսկվայի «Պարիժսկայա Կոմունա» կոշիկի գործարանի ստախանովական Մատրոսովի մեթոդի կիրառման շնորհիվ, արտադրության նորանոր առաջավորներ են աճել Հայաստանի թեթև և տեղական արդյունաբերության ձեռնարկություններում։

Երևանի № 1 կոշիկի գործարանի ձևող բանվորուհի Անյա Բարսեղյանը 4



ամսում կատարել է 7200 քառակուսի դեցիմետր կաշվի խնայողություն, որից լրացուցիչ կերպով կպատրաստվի 400 զույգ կոշիկ։ № 3 կոշիկի գործարանի ընկ. Թումանյանի ձևող բրիգադան տարեկան պլանը խոստացել էր կատարել հունիսի 20-ին, սակայն աշխատանքի ռացիոնալ մեթոդների կիրառման շնորհիվ նա տարեկան պլանը կատարեց մայիսի 1-ին, տալով 6500 զույգ կոշիկ և ապա մինչև մայիսի 20-ը լրացուցիչ դարձյալ 1350 զույգ։

Աշխատանքի ստախանովյան մեթոդների կիրառման շնորհիվ Լենինականի տեքստիլ կոմբինատի ջուլհակ Օլգա Բաբալյան իր 4 ամսվա պլանը կատարել է 109 տոկոսով, մանածագործ Լիզա Գասպարյանը՝ 135 տոկոսով։

Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում մեր Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների, ինժեներների, տեխնիկների և ծառայողների ձեռք բերած հաջողություններն արդյունք են լայնորեն ծավալված սոցիալիստական մրցության, դրանք ցույց են տալիս, թե մեր արդյունա-

բերության մեջ ինչպիսի անսպառ հնարավորություններ կան, որոնց հմուտ ու ձեռներեց օգտագործումն է՛լ ավելի կբարձրացնի արտադրության ծավալը և կնպաստի հետագա տեխնիկական առաջադիմությանը։

Մասսաների սոցիալիստական մրցությունը բարձրացնում է արտադրության զարգացման տեմպերը, նպաստում է արտադրական նոր կարողությունների օգտագործմանը, արտադրանքի նոր տեսակների յուրացմանը, ավելացնում է բնակչության համար անհրաժեշտ արտադրանքի թողարկումը։

Խոսելով սոցիալիստական մրցության սկզբունքի մասին, ընկեր Ստալինն ասել է. «...Սոցիալիստական մրցության սկզբունքն է առաջավորների կողմից ընկերական օգնությունը հետ մնացողներին, ընդհանուր վերելքի հասնելու համար»։

Ահա թե ինչու անհրաժեշտ է լայնորեն մասսայականացնել արտադրության առաջավորների փորձը, արտադրության նովատորների նվաճումները դարձնել լայն մասսաների սեփականություն, հետ մնացողնե-



րին հասցնել առաջավորների մակարդակին։

Սոցիալիստական մրցության և հարվածայնության լայն ծավալումը մեր պլանների կատարման երաշխիքն է։ Որքան ավելի լայն լինի ծավալված մրցությունը, այնքան ավելի մեծ կլինեն մեր հաջողությունները։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի պանծալի 30-ամյակի դիմավորման այս նշանակալից օրերին մեր Ռեսպուբլիկայում չպետք է լինի ետ մնացող ոչ մի գործարան, ֆաբրիկա, հանքահոր, նորակառույց։ Պետք է մոբիլիզացիայի ենթարկել բոլոր ուժերը, Համամիութենական սոցիալիստական մրցությամբ ստանձնված պարտավորությունները անպայման կատարելու, Մեծ Հոկտեմբերի 30-ամյակը արտադրական նորանոր նվաճումներով դիմավորելու համար։

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՀԿ(բ)Պ Կենտկոմի Արդյունաբերության և Տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ

—o—

# ՀԱՆՔԱՓՈՐ ԿՈՒԲԼԱԼԻ ՀԱՍԱՆՈՎ

Հուշակավոր Լալվարից փոքր ինչ հյուսիսարևելք, բարձր լեռան վրա թառել է Շամլուղը։ Այստեղ երկրի ընդերքից հանվում է պղնձի հանքաքարը։ Պղինձը էլեկտրական հոսանքը հաղորդող լավագույն մետաղն է, որն այնքան կարևոր է մեր երկրի համար։ Պղինձը պիտանի է էլի շատ բաների համար։

Շամլուղը սիստեմատիկաբար, ամսե-ամիս կատարում է իր պլանը։ Ապրիլին և մայիսին պղնձի հանքաքարի հանման պլանը կատարվել է հարյուր տոկոսով։ Շամլուղը երկրին պարտք չի մնում։ Միշտ ճիշտ և ժամանակին նա կատարում է իր պարտքը երկրի հանդեպ։

Բայց հարց է ծագում՝ Շամլուղը չի՞ կարող արդյոք ավելին տալ, քան նրանից պահանջվում է, քան նա տալիս է։

Կարո՛ղ է։



Շամլուղում կան անվանի հորատողներ, որոնք և վճռում են պլանի կատարումը։ Դրանք ստախանովականներն են, կյանքն արագ առաջ մղողները, մեր հպարտությունը, մեր պարծանքը։ Հորատող Գարեգին Հովհաննիսյանն իր ամսվա պլանը սիստեմատիկաբար կատարում է 130–140 տոկոսով, Ստեփան Քառյանը՝ 130–150 տոկոսով, Աբրահամ Ջախալովը՝ 140–150 տոկոսով, Դմիտրի Ջախալովը՝ 150–160 տոկոսով, իսկ հանքերի հռչակավոր հորատող Կուբլալի Հասանովը՝ 180–200 տոկոսով։

Բայց Շամլուղում կան նաև պլանները չկատարողներ։ Եվ երբ ասում ենք, թե Շամլուղը պլանը կատարել է 100 տոկոսով, իրենց պլանը թերակատարողները թաքնվում են անվանի հորատողների ստվերում։

Շամլուղն իր պլանը կկատարեր ոչ թե 100 տոկոսով, այլ կտար պլանի կատարման շատ ավելի բարձր տոկոս, եթե հանքերում բոլորը կատարեին իրենց պլանը։ Եթե անվանի հորատողների փորձը հասներ ամեն մեկին, Շամլուղը երկրին կտար ավելի բարձր նորմա,

և այն ժամանակ ավելի շատ կլիներ էլեկտրական հոսանք հաղորդող մետաղ՝ պղինձը։ Իսկ պղինձ մեզ շատ է պետք։ Երկիրը պետք է պատվի էլեկտրական լարերի խիտ ցանցով։ Նոր հնգամյակը էլեկտրականության ծաղկման հնգամյակ է։

Ծանոթանանք Շամլուղի նշանավոր հորատողներից մեկի աշխատանքին։

Դա Կուբյալի Հասանովն է։

Նրա մասին գիտեն շատերը, նրա հուշակը տարածվում է, որի համար ճանապարհ է հարթում հենց ինքը։ Նրա մասին ասում են, որ լեռների մարդ է, լեռներում ծնված, լեռներում մեծացած։ Լեռների կրքոտ սիրահարը իր համար աշխատանքի վայր ընտրեց հենց լեռներում։ Եվ որովհետև լեռներ շատ էր սիրում, վճռեց տեսնել նրանց ընդերքը ու դարձավ հանքափոր։

Տասնվեց տարի է, ինչ Կուբլայի Հասանովը հորատում է, փորում երկրի ընդերքը, ավելի շատ էլեկտրական հոսանք հաղորդող մետաղ տալու համար։ Նա իր մասնագիտությունը համարում է երկրի համար կարևոր մասնագիտություն։



Կուբլալի Հասանովի համար հատկանշական է միշտ բարձր մակարդակի վրա գտնվելը։ Նա խորը գիտակցում է, որ նոր հնգամյակը բարձր տեմպերի հնգամյակ է, մեր երկիրը՝ բարձր տեմպերի երկիր։ Այդ գիտակցությունն է, որ նրան մղում է աշխատանքային ճակատում նորանոր սխրագործությունների։ Մարտ ամսին նա իր պլանը կատարեց 156 տոկոսով, ապրիլին՝ 183 տոկոսով, իսկ մայիսին՝ 200 տոկոսով։ Միշտ բա՜րձր, միշտ առա՜ջ,— այս է հանքերի նովատորի աշխատանքի ոճը։ Նրա մոտ աշխատանքը ռիթմիկ է, որից սիստեմատիկաբար աճում է աշխատանքի արտադրողականությունը։

Կյանքը ցույց տվեց, որ մարդը՝ զինված առաջավոր տեխնիկայով՝ վճռում է ամեն ինչ։ Կուբլալի Հասանովը մեկն է այն առաջավոր բանվորներից, որոնք հրաշալի տիրապետում են իրենց գործի, մեքենայի տեխնիկային։ Նա գերազանց է տիրապետում հորատող մեքենայի տեխնիկային, և հենց այդ է պատճառը, որ երբ մեքենան խափանվում է, նա հենց հանքում կարողանում է վերանորոգել այն և աշխա-

տեցնել։ Կուբլալի Հասանովն անընդհատ լարված աշխատեցնում է հորատող մեքենան իր ամբողջ կարողությամբ, բայց և խընամում է մեքենան իր աչքի լույսի պես։

—Աշխատեցրու որքան կարող ես, բայց խնամի՛ր,— ասում է Կուբլալին։

Կուբլալի Հասանովը ոչ միայն տիրապետում է հորատող մեքենայի տեխնիկային, նա նաև հանքագործ մեծ վարպետ է։ Երկարատև աշխատանքի փորձ ունենալով, նա հրաշալի գիտե հանքերի երակները, գիտե, թե ո՞ր երակներում ինչպես պիտի դասավորել պայթեցման անցքերը։ Այդ է պատճառը, որ երբ պայթեցման աշխատանքն ավարտվում է, միշտ նկատելի է, որ Կուբլալի Հասանովի մոտ ավելի շատ հանքաքար է ստացվում, քան մյուսներին։ Իսկ պայմանները բոլոր հորատողների մոտ միատեսակ են։

Կուբլալի Հասանովը խստապահանջ է իր նկատմամբ։ Նրա մոտ րոպեները հաշված են, ոչ մի րոպե զուր չի կորչում։ Նա շատ լավ է հասկանում, որ կորցրած ամեն մի րոպեն մի քանի կիլոգրամ հանքաքարի կորուստ է նշանակում։ Մտեք նրա հանքա-



խորշը և ամեն րոպե կլսեք հորատող մեքենայի աշխատանքի ձայնը։ Այդ՝ տեխնիկայով զինված մարդն է աշխատում։

—Ուրիշները մտնում են հանքահորը և այնտեղ են սկսում կարգի բերել կարբիդի լամպը,— ասում է Կուբլալի Հասանովը,— որի վրա կորչում է համարյա կես ժամ։ Ես լամպը պատրաստում եմ նախքան հանքահոր մտնելը և անտեղի չեմ կորցնում ոչ մի րոպե։

Թե որքան բծախնդիր է Կուբլալի Հասանովը դեպի աշխատանքային րոպեի օգտագործումը, այդ կարելի է համոզվել հետևյալից։

Հանքում դարսված են հորատող մեքենայի նորոգված գայլիկոնները։ Կուբլալի Հասանովը առանց երկար ու բարակ նայելու վերցնում է նրանցից մեկը և անմիջապես անցնում իր հանքախորշը։ Ահա լսվում է հորատող մեքենայի ձայնը։ Նա աշխատում է։ Իսկ այդ միջոցին դեռ նրա ընկերները զբաղված են գայլիկոններ ջոկելով։

Իր գործն ի սրտե սիրելը, տեխնիկային գերազանց տիրապետելը, ամեն մի րոպեն արդյունավետ օգտագործելը, հարուստ աշ-

խատանքի փորձը Կուբլալի Հասանովի աշխատանքը դարձնում են արդյունավետ, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը։ Նա 5 ամսում կատարել է ինը և կես ամսվա նորմա։

Ով շատ է արտադրում, նա շատ էլ ստանում է։ Կուբլալի Հասանովն ապրիլ ամսին ստացել է 3700 ռուբլի աշխատավարձ։ Իսկ մայիսին՝ 4000 ռուբլուց ավելի։ Նա ուրախ է ու հպարտ իր գործով, իր կյանքով, նա Ստալինյան նոր հնգամյակի նովատորներից է, որոնք արտադրությունը մղում են առաջ և երկրի ծաղկման ու բարգավաճման գործն իրենց սեփական գործն են համարում։

Կուբլալի Հասանովը խոսք է տվել և իր խոսքը գործի կվերածի — նա իր տարեկան պլանը գերակատարած, բաց ճակատով կդիմավորի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը։

ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ



ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

# ԻՆՉՊԵ՞Ս ՊԱՏՐԱՍՏՎԵԼ ԶՐՈՒՅՑԻ

Զրույցի համար ագիտատորի նախապատրաստությունը նրա աշխատանքի կարևորագույն և բաղկացուցիչ մասն է։ Զրույցը կարող է հետաքրքիր ու բովանդակալից լինել միայն այն դեպքում, եթե այն խնամքով է նախապատրաստված։

Ագիտատորներն իրենց պրակտիկ աշխատանքում հաճախ հանդիպում են այն հարցին, թե ինչպես պատրաստվել զրույցի, որպեսզի այն մատչելի լինի ունկնդիրների համար, լինի ավելի արդյունավետ։

Մատնանշենք մի քանի մոմենտներ, որ պետք է յուրաքանչյուր ագիտատոր հաշվի առնի զրույցի պատրաստվելիս։

Զրույցի համար ագիտատորի նախապատրաստությունը բաղկացած է հետևյալ հիմնական մոմենտներից.

1. Տվյալ թեմայի վերաբերյալ նյութերի

ընտրությունը և նրանց բազմակողմանի ուսումնասիրությունը։

2. Զրույցի պլան կազմելը և նյութի դասավորությունը։

Զրույցի համար ագիտատորի նախապատրաստությունը պետք է սկսվի փաստական նյութի ընտրությունից, որին հաջորդելու է դրա մանրամասն ու խոր ուսումնասիրությունը։ Նյութի ուսումնասիրությունը կատարվում է ուշադիր ընթերցանության և ընթերցածն ըմբռնելու միջոցով, ըստ որում ագիտատորը պետք է արտագրի առանձին քաղվածքներ, նշի թվական տվյալները, տարեթվերը, անունները և այլն։

Այն բանից հետո, երբ տվյալ թեմայի ուսումնասիրության համար ընտրված հիմնական գրականությունն արդեն ընթերցված է, և ագիտատորը հանգամանորեն յուրացրել է առաջիկա զրույցի բովանդակությունն ու որոշել նրա նպատակը, անհրաժեշտ է նշել թեմայի հանգուցային հարցերը, լավ մտածել ու կազմել զրույցի պլանը։

Սակայն ագիտատորը պետք է նկատի ունենա, որ նրա աշխատանքը չի սահմա-



նափակվում միայն պլան կազմելով, որովհետև պլանը մատնանշում է գլխավորապես այն, թե ինչի մասին պետք է խոսել, բայց չի նշում, թե կոնկրետ կերպով ինչ և ինչպես պետք է ասել։ Ուստի միանգամայն հասկանալի է, որ ագիտատորի հետագա աշխատանքը պետք է լինի պլանի յուրաքանչյուր բաժինը լրացնել և հարստացնել փաստական նյութով— քաղվածքներ, տարեթվեր, թվական տվյալներ, իլյուստրացիոն նյութ, համեմատություններ և այլն։

Զրույցի պլանը կազմելիս ագիտատորի խնդիրն այն է, որ նյութը ճիշտ բաշխվի ըստ բաժինների և նշվի քննարկման ենթակա հարցերի հաջորդականությունը։

Նյութի պարզ և հաջորդական շարադրման օրինակ են ծառայում Լենինի և Ստալինի բոլոր զեկուցումներն ու ճառերը։

Պլանի մեջ պետք է նշել զրույցի հիմնական բաժինները և յուրաքանչյուր բաժնում՝ գլխավոր հարցերը։ Այդ զգալիորեն կհեշտացնի ագիտատորի աշխատանքը և նրան հնարավորություն կտա զրույցի ընթացքում հիմնական ուշադրությունը կենտրոնացնել գլխավոր հարցերի վրա։

Զրույցի պլանը կազմվում է սովորաբար հարցերի ձևով, կամ վերնագրերի ձևով։

Պարբերական մամուլը՝ թերթերը, ժուռնալները այն հիմնական աղբյուրն են, որից պետք է ագիտատորն օգտվի զրույցների համար։

Զրույցի համար պատրաստվելիս կարևոր նշանակություն ունի տեղական փաստերի օգտագործումը, որոնք սովորաբար աշխուժացնում են զրույցը և հետաքրքրություն են առաջացնում ունկնդիրների մեջ։

Ամեն դեպքում ագիտատորը պետք է նկատի ունենա իր ունկնդիրների աշխատանքի բնույթը, նրանց քաղաքական մակարդակը։ Օրինակ, եթե ագիտատորը միջազգային դրության մասին զրույց է անցկացնելու այնպիսի ունկնդիրների հետ, որոնց ընդհանուր պատրաստությունը ցածր է, որոնք թերթեր կարդում են ոչ սիստեմատիկաբար, ապա նա պետք է զրույցի նախապատրաստվելիս նշի, թե ի՞նչ հարցերի վրա է հարկավոր հատկապես կանգ առնել, ի՞նչ խնդիրներ և ի՞նչպես է հարկավոր պարզաբանել, որպեսզի ունկնդիրները կարողանան յուրացնել տվյալ զրույցի թեման, պետք է բացատրի նրանց հա-



մար անծանոթ անունները, բառերը, արտահայտությունները, աշխարհագրական վայրերը և այլն։

Այստեղ ագիտատորին մեծ օգնություն ցույց կտա տեղեկատու գրականությունը, որից նա պետք է կարողանա հմտորեն օգտվել։

Ամենից ավելի տարածված տեղեկատու գրականության թվին են պատկանում Մեծ և Փոքր սովետական էնցիկլոպեդիաները, որտեղ ագիտատորը կարող է տեղեկություններ գտնել ամենաբազմապիսի հարցերի վերաբերյալ— աշխարհագրական, պատմական, տնտեսագիտական, հասարակական-քաղաքական և այլն։ Բայց անհրաժեշտ է նկատի ունենալ, որ էնցիկլոպեդիաներում չեն արտացոլված վերջին տարիների իրադարձությունները և, բացի այդ, մի շարք տեղեկություններ հնացած են։

Այնուհետև տեղեկատու լավ աղբյուր է «Օտար բառերի բառարանը», որը ագիտատորին կարող է տալ մեր թերթերում և ժուռնալներում գործածվող օտար բառերի բացատրությունը։

Մյուս հարուստ և օգտակար տեղեկատու

աղբյուրը «Քաղաքական բառարանն» է։ Այստեղ կարելի է գտնել համառոտ տեղեկություններ առանձին երկրների, պատմական փաստերի, ռևոլյուցիոն իրադարձությունների մասին, ինչպես նաև մամուլում հանդիպող առանձին բառերի ու արտահայտությունների բացատրությունը։

Իբրև տեղեկատու նյութի աղբյուր կարող են ծառայել օրացույցը, աշխարհագրության և պատմության դասագրքերը։

Գեղարվեստական գրականության հմուտ օգտագործումը նույնպես, ագիտատորներին մեծ օգնություն ցույց կտա զանազան թեմաների շուրջը զրույցներ անցկացնելիս։ Կարելի է գեղարվեստական գրքերից բարձրաձայն կարդալ նյութի հետ կապված առանձին հատվածներ, հանձնարարել գեղարվեստական գրականության ցանկը՝ ինքնուրույն ընթերցանության համար և այլն։

Ագիտատորը պետք է նաև աչքաթող չանի ժամանակի հարցը, նա պետք է կարողանա զրույցի ժամանակամիջոցը հագեցնել ավելի մեծ բովանդակությամբ, չձանձրացնել ունկնդիրներին։



Յուրաքանչյուր ագիտատոր պետք է միշտ հիշի, որ քաղաքական ագիտացիայի որակը ամենից առաջ կախված է իր վրա կատարվող աշխատանքից։ Ուստի ագիտատորը պետք է մշտապես հարստացնի իր քաղաքական գիտելիքները, խնամքով և լուրջ պատրաստվի յուրաքանչյուր զրույցին։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

---

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԴԵՆԱՑԻՖԻԿԱՑԻԱՅԻ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԶԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի Մոսկվայի սեսիայում, որն ավարտվեց ապրիլի վերջերին, Գերմանիայի դենացիֆիկացիայի, նրա տնտեսական ու քաղաքական կյանքի դեմոկրատիզացիայի հարցը մեծ տեղ գրավեց գերմանական պրոբլեմի քննարկման ժամանակ։ Եվ դա պատահական չէ։ Առանց դենացիֆիկացիայի, այսինքն նշանավոր հիտլերականներին տնտեսական ու վարչական ապարատի հրամանատարական պոստերից հեռացնելու, և առանց դեմոկրատիզացիայի, այսինքն ֆաշիստական ռեակցիայի սոցիալ-տնտեսական ու քաղաքական բազան ոչնչացնելու, հնարավոր չէ Գերմանիան դարձնել խաղաղասեր պետություն, մի բան, որին ձգտում են խաղաղության բոլոր իսկական կողմնակիցները։



Երեք տերությունների Բեռլինի կոնֆերենցիան (1945 թ. հուլիս-օգոստոս) նշեց Գերմանիայի դենացիֆիկացիայի ու դեմոկրատիզացիայի լայն ծրագիր։ Այդ ծրագիրը պարտադիր է Գերմանիայի օկուպացիային մասնակցող բոլոր տերությունների՝ Սովետական Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Անգլիայի և Ֆրանսիայի համար։

Իսկ ինչպե՞ս են նրանք կատարել այդ պարտավորությունները։

Գերմանիայի սովետական ռազմական ադմինիստրացիան հետևողականորեն և բարեխղճությամբ իրագործել է Գերմանիայի դենացիֆիկացիայի ու դեմոկրատիզացիայի ծրագիրը։ Սովետական գոտում կենսագործված է Արևելյան Գերմանիայի ռազմա—արդյունաբերական պոտենցիալը ոչնչացնելու և արդյունաբերությունը խաղաղ կարիքների սպասարկման փոխադրելու որոշումը։ Սովետական գոտում լիկվիդացված են խոշոր տրեստներն ու մոնոպոլիաները, փակված են գերմանական ղեկավար բանկերը և ստեղծված է տեղական մունիցիպալ բանկերի ցանց։ Լիովին համապատասխան գերմանական բնակչության կամքին, որն արտահայտվեց 1946 թվականի հունիսի 30—ին

տեղի ունեցած ռեֆերենդումի (համաժողովրդական հարցման) միջոցով, Սաքսոնիայում ռազմական խոշոր հանցագործների և նշանավոր հիտլերականների սեփականությունը բռնագրավվեց ու հանձնվեց ինքնավարման օրգաններին։ Պետությանն անցած ձեռնարկությունների ղեկավարման մեջ ներգրավված են բանվորները, արտադրական խորհուրդները և ֆաբրիկա—գործարանային կոմիտեները։

Սովետական գոտում մեծ աշխատանք է կատարված գյուղի տնտեսական կյանքը դեմոկրատացնելու ուղղությամբ։ Հողային ռեֆորմն գդալի հարված հասցրեց կալվածատիրական հողատիրությանը։ Ընդամենը բռնագրավված է 9690 կալվածատիրական կալք և հող է բաժանված մոտավորապես 400 հազար գյուղացիական ընտանիքների։ Լիկվիդացնելով կալվածատիրական կաստայի նյութական բազան, կաստայի, որը գերմանական իմպերիալիզմի գլխավոր հենարանն էր հանդիսանում, ագրարային ռեֆորմը վճռական նախադրյալներ ստեղծեց գյուղի տնտեսական կյանքը դեմոկրատացնելու համար։ Ներկայումս այնտեղ գոյություն ունեն գյուղացիական փոխադարձ օգնության



հարյուրավոր կոմիտեներ, գործում են մասսայական հակաֆաշիստական կազմակերպությունները։

Գերմանիայի օկուպացիայի հենց առաջին օրերից Սովետական գոտում հիտլերականները հեռացվեցին վարչական ու տնտեսական ապարատից, վտարվեցին հասարակական և կուլտուրական կյանքի ղեկավարման ասպարեզից։ Զանազան հանձնաժողովների աշխատանքին մասնակցում են դեմոկրատական հասարակայնության ամենալայն խավերի ներկայացուցիչները։ Ոչնչացնելով հիտլերյան պետության և նրա կենտրոնացված բյուրոկրատական ադմինիստրացիայի մնացորդները, սովետական օկուպացիոն իշխանությունները վերականգնեցին ինքնավարման տեղական օրգանները—համայնքները, լանդտագները (առանձին պրովինցիաների պառլամենտները) և պրովինցիալ կառավարությունները։

Իշխանության այս բոլոր օրգանները կառուցվում են դեմոկրատական ընտրական հիմունքներով։ Անցյալ տարվա աշնանն ընտրված՝ առանձին հողերի (պրովինցիաների) լանդտագները, որտեղ լայնորեն ներկայացված են երկրի բոլոր դեմոկրատական

ուժերը, արդեն մշակել են կոնստիտուցիաների նախագծերը: Կոնստիտուցիաների նախագծերը պաշտպանում են Գերմանիայի քաղաքական միասնության գաղափարը, նրա վերածումը խաղաղասեր դեմոկրատական պետության:

Գերմանիայի դենացիֆիկացիայի և դեմոկրատիզացիայի համար առանձնակի նշանակություն ունեցավ սովետական օկուպացիոն գոտում կիրառված դպրոցական ռեֆորմը: Օկուպացիայի սովետական գոտու տերիտորիայում 1946 թվականին արդեն գործում էր 10.675 ժողովրդական դպրոց՝ 2 միլիոն 218 հազար աշակերտությամբ: Դպրոցներից վտարվեցին ավելի քան 30 հազար ֆաշիստ ուսուցիչներ. դպրոցներին տրված են նոր դասագրքեր: Սովետական գոտում հաջողությամբ զարգանում և դեմոկրատացվում է կուլտուրական կյանքը՝ թատրոնները, կինոները, մամուլը, ռադիոն:

Գերմանիայի կյանքը դեմոկրատական հիմունքներով վերակառուցելու իր աշխատանքում սովետական ռազմական ադմինիստրացիան հենվում է հենց գերմանական ժողովրդի դեմոկրատական ուժերի վրա, որոնց միավորում են հակաֆաշիստական պարտի-



աները և մասսայական կազմակերպությունները: Այդ, ամենից առաջ, Գերմանիայի Միասնական սոցիալիստական պարտիան է, որ կազմակերպվեց 1946 թվականի ապրիլին, կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական պարտիաների միաձուլման հետևանքով: Գերմանիայի Միասնական սոցիալիստական պարտիան ներկայումս միավորում է մոտ 1 միլիոն 700 հազար անդամ և հսկայական ազդեցություն ունի աշխատավոր բնակչության լայն խավերի մեջ:

Միասնական սոցիալիստական պարտիան հիմքն է հանդիսանում հակաֆաշիստական պարտիաների միասնական ճակատի, որի մեջ մտնում են նաև բուրժուական պարտիաներ՝ լիբերալ-դեմոկրատական պարտիան և քրիստոնեական-դեմոկրատական միությունը:

Դեմոկրատական պարտիաների հետ միասին, սովետական օկուպացիոն գոտում կան աշխատավորների մի շարք խոշոր մասսայական կազմակերպություններ— ազատ պրոֆմիությունները (ավելի քան 4 միլիոն մարդ), կանանց դեմոկրատական միությունը, «Ազատ երիտասարդություն» կազմակերպությունը (մոտ կես միլիոն անդամ),

գյուղացիական փոխօգնության կոմիտեները, Կուլտուրբունդը (հակաֆաշիստական ինտելիգենցիայի միավորումը) և այլն։ Այս բոլոր կազմակերպությունները ակտիվ կերպով մասնակցում են երկրի դենացիֆիկացիային ու դեմոկրատիզացիային։

Սրանք են Գերմանիայի սովետական օկուպացիոն գոտում իրականացված դենացիֆիկացիայի և խոշորագույն դեմոկրատական վերափոխումների արդյունքները։ Դրանք վկայում են, որ Սովետական Միությունն ազնվորեն և բարեխղճությամբ կատարում է Բեռլինյան կոնֆերենցիայի ընդունած պարտավորությունները։

Այլ է դրությունը Գերմանիայի արևմտյան օկուպացիոն գոտիներում։ Դենացիֆիկացիան և դեմոկրատիզացիան այստեղ իրականացվում են դանդաղորեն, ակնհայտ է լուրջ նահանջը Բեռլինյան համաձայնությամբ նշված քաղաքականությունից։

Արևմտյան Գերմանիայում ընդհուպ մինչև վերջին ժամանակներս ռեակցիան պահպանում է իր համարյա բոլոր տնտեսական, իսկ զգալի չափով նաև քաղաքական դիրքերը։ Չնայած որ բանվորական և գյուղացիական մասսաները պահանջում են կիրառել



հողային ռեֆորմ, կալվածատիրական հողատիրությունը մնացել է միանգամայն անձեռնմխելի։ Ամերիկյան և անգլիական ներկայացուցիչները Մինիստրների Խորհրդի Մոսկվայի սեսիայում հայտարարեցին, թե իրենց գոտիներում առհասարակ անհնարին է հողային լայն ռեֆորմ կիրառել։ Մինչդեռ հայտնի է, որ ամերիկյան գոտում կա ավելի քան 3 միլիոն հեկտար հող, որ կարող է հանձնվել գյուղացիներին։ Անգլիական օկուպացիոն գոտում 1250 կալվածատերեր ունեն ավելի քան 1 միլիոն հեկտար հող։ Մինչդեռ զանազան հիմնարկներում քննարկվում են հողային խղճուկ ռեֆորմի պլանները, կալվածատերերը նստած են իրենց կալվածքներում, սաբոտաժի են ենթարկում գյուղատնտեսական արտադրության զարգացումը, կասեցնում են պարենամթերքի մատակարարումը քաղաքներին։ Դրա հետևանքով Արևմտյան Գերմանիայում տիրում է սովը, մասսայական դժգոհությունը, տեղի են ունենում սովյալների ցույցեր և գործադուլներ։ Կալվածատերերը համարյա լիովին պահպանել են իրենց դիրքերը Արևմտյան Գերմանիայի նաև քաղաքական կյանքում։ Օգտվելով օկուպացիոն իշխանությունների

բարյացակամությունից, կալվածատերերի կամակատարները թափանցում են վարչական ապարատը, մասնավորապես պարենային օրգանների մեջ, իրենց ձեռքն են վերցնում իշխանության տեղական գերմանական օրգանները։

Նույնպիսի դրության մեջ են գտնվում նաև գերմանական արդյունաբերողները։ Չնայած Բեռլինյան կոնֆերենցիայի կտրուկ որոշումներին, մոնոպոլիստական միավորումները՝ տրեստները, կարտելները և սինդիկատները լիկվիդացված չեն։ Արդյունաբերության ղեկավարությունը շարունակում է մնալ գերմանական խոշոր կապիտալիստների ձեռքում, որոնք ժամանակին հիտլերյան ռեժիմի գլխավոր հենարանը և գերմանական ագրեսիայի ոգեշնչողներն էին։ Հավատարիմ ծառայելով անգլո-ամերիկյան մոնոպոլիաներին, որոնք Արևմտյան Գերմանիայի էկոնոմիկայի մեջ զավթել են կարևոր դիրքերը, գերմանական արդյունաբերողներն անարգել իրագործում են իրենց քաղաքականությունը։ Այդ քաղաքականության նպատակն է՝ վիժեցնել Գերմանիայի տնտեսական զինաթափումը և ռեպարացիաների իրականացումը, խափանել արդյունա-



բերության կարևորագույն ճյուղերի ազգայնացումը և տնտեսական կյանքի դեմոկրատիզացիան։

Արևմտյան Գերմանիայում վարչական և տնտեսական ապարատը խճողված է հիտլերականներով, որոնք ուժեղ ազդեցություն են գործում տնտեսական ու քաղաքական կյանքի վրա։ Դեմոկրատական հասարակայնության ճնշման տակ անգլիական և ամերիկյան գոտիներում իրականացվում են «դենացիֆիկացիայի» որոշ միջոցառումներ։ Բայց գրաված պոստերից հեռացվում է հիտլերականների միմիայն աննշան մասը, այն էլ գերազանցապես մանր չինովնիկներ։

Ահա մի քանի առավել ցայտուն օրինակներ։ Պաշտոնական տվյալներով, անցյալ տարվա ընթացքում Բավարիայում դենացիֆիկացիայի հանձնաժողովներով անցած 163 հազար հիտլերականներից միայն 49-ն են ճանաչվել «ակտիվ»։ Մյունխենում, որը մինչև այժմ էլ գերմանական ռեակցիայի որջն է հանդիսանում, 50 հազար նացիստներից միայն 8-ն են ճանաչվել «ակտիվ», իսկ բոլոր մնացածների իրավունքները վերականգնված են։

Գերմանիայում ստեղծված Վերահսկիչ խորհրդի օրենքների աղաղակող մի խախտում էր մոտ 1,5 միլիոն երիտասարդ հիտլերականներին ներումն շնորհելը։

Անգլո-ամերիկյան օկուպացիոն իշխանությունների ներողամիտ վերաբերմունքը ակտիվ ֆաշիստների նկատմամբ, նպաստում է հիտլերյան ընդհատակի աշխուժացմանը։ Այդ մասին են մի ավելորդ անգամ հիշեցնում այնպիսի փաստեր, ինչպես հիտլերյան անլեգալ խոշոր կազմակերպության հայտաբերումն Արևմտյան Գերմանիայում կամ ռումբերի պայթյունները Շտուտգարտում և Նյուրնբերգում։

Ֆաշիզմն արմատախիլ անելու և թաքնված ու քողարկված հիտլերականներին մերկացնելու համար մղվող պայքարում լուրջ օգնություն կարող են ցույց տալ հակաֆաշիստական պարտիաներն ու կազմակերպությունները։ Առանց բուն գերմանական ժողովրդի դեմոկրատական ուժերի գործունեությունը ծավալելու, անհնարին է Գերմանիայի դենացիֆիկացիան և դեմոկրատիզացիան։ Բայց այս տեսակետից ևս դրությունը բոլորովին բարենպաստ չէ։ Արևմտյան Գերմա-



նիայի օկուպացիոն իշխանություններն ամեն տեսակ խոչընդոտներ են ստեղծում դեմոկրատական պարտիաների զարգացման համար, իրենց օկուպացիոն գոտիներում արգելում են Միասնական սոցիալիստական պարտիայի գործունեությունը, արգելակում են դեմոկրատական պարտիաների և պրոֆմիությունների միավորումը համագերմանական մասշտաբով։ Մինչդեռ այնտեղ ազատ գործում են ռեակցիոն պրոֆաշիստական պարտիաներն ու խմբերը։ Անգլիական գոտում թույլատրված է տասնյոթ պարտիաների գործունեությունը, որոնցից տասներկուսը ռեակցիոն պարտիաներ են։ Ամերիկյան գոտում նույնպես գոյություն ունեն զանազան ռեակցիոն պարտիաներ և կազմակերպություններ։

Ռեակցիոն ուժերի ակտիվությանը նպաստում է արևմտյան գոտիներում գոյություն ունեցող ոչ-դեմոկրատական ընտրական սիստեմը։ Ամերիկյան գոտում, օրինակ, այն քաղաքական պարտիաներին, որոնք ընտրությունների ժամանակ չեն ստացել ձայների 10 տոկոսը, չի թույլատրվում մասնակցել տեղական պառլամենտներին և կառավարություններին։

Արևմտյան Գերմանիայի առանձին հողերի կոնստիտուցիաները, որ հաստատված են անգլո-ամերիկյան ադմինիստրացիայի կողմից, պարունակում են ոչ-քիչ թվով այնպիսի դրույթներ, որոնք հակասում են երկրի դեմոկրատացման խնդրին։ Բավարիայի (ամերիկյան գոտի), Ստորին Սաքսոնիայի (անգլիական գոտի) կոնստիտուցիաները, օրինակ, ամրացնում են խոշոր կապիտալիստների ու կալվածատերերի դիրքերը երկրի էկոնոմիկայի մեջ և ուղղված են աշխատավորների շահերի դեմ, կենսական սոցիալ-տնտեսական ռեֆորմների դեմ։ Այդ կոնստիտուցիաները նաև ուղղված են Գերմանիայի պետական միասնության դեմ և տանում են դեպի նրա մասնատումը։

Այսպես է դրությունը արևմտյան օկուպացիոն գոտիներում։ Նման դրությունը չի կարող անհանգստություն չառաջացնել դեմոկրատական լայն շրջանների մեջ՝ Գերմանիայում և նրա սահմաններից դուրս։ Այս դրությունը վկայում է Բեռլինյան կոնֆերենցիայի որոշումները լրջորեն աղավաղելու մասին։

Գերմանիայի դենացիֆիկացիայի և դեմոկրատիզացիայի հարցը բազմակողմանիո-



րեն քննության առնվեց Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի Մոսկվայի սեսիայում։ Սովետական դելեգացիան հետևողական պայքար էր մղում Ղրիմի և Բեռլինի կոնֆերենցիաների որոշումները լիովին կենսագործելու համար, որոշումներ, որոնք նախատեսում են վճռականորեն արմատախիլ անել նացիզմը Գերմանիայի տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներից, այն վերակառուցել դեմոկրատական հիմունքներով։ Ելնելով այդ որոշումներից, սովետական դելեգացիան պնդում էր, որպեսզի անհապաղ միջոցներ ձեռնարկվեն նախկին ակտիվ հիտլերականներին պատասխանատու պոստերից հեռացնելու և ռազմական հանցագործներին դատի տալու համար։ Սովետական դելեգացիան արեց նաև մի շարք առաջարկներ, որոնց նպատակն է արագացնել դեմոկրատացման տեմպերը, խրախուսել դեմոկրատական պարտիաների և կազմակերպությունների գործունեությունը համագերմանական մասշտաբով, դեմոկրատական ընտրությունների միասնական սիստեմ սահմանել բոլոր գոտիներում, արագացնել հողային ռեֆորմի վերաբերյալ Վերահսկիչ խորհրդի որոշման





կենսագործումը (սովետական գոտում այդ ռեֆորմը, ինչպես հայտնի է, արդեն կիրառված է)։

Ղրիմի և Բեռլինի կոնֆերենցիաների որոշումներին համապատասխան մնալու նույն ոգով էին տոգորված սովետական առաջարկները Գերմանիայի ժամանակավոր քաղաքական կազմակերպության ու պետական կառուցվածքի մասին և, մասնավորապես գերմանական ժամանակավոր կոնստիտուցիայի մշակման գործում դեմոկրատական կազմակերպություններին ներգրավելու մասին։

Սովետական դելեգացիայի անշեղ պայքարի հետևանքով, Մոսկվայի սեսիան ընդունեց մի շարք որոշումներ, որոնք նպաստում են Գերմանիայի հետագա դեմոկրատացմանը և Պրուսիայի լիկվիդացմանը։ Մինիստրների Խորհուրդը դիրեկտիվներ տվեց Վերահսկիչ խորհրդին դենացիֆիկացիայի ու դեմոկրատիզացիայի և այլ հարցերի վերաբերյալ։ Սակայն Գերմանիայի ժամանակավոր քաղաքական կազմակերպության որոշ հարցերի վերաբերյալ անգլիական, ամերիկյան ու ֆրանսիական դելեգացիաները հրաժարվեցին ընդունել Սովետական Միության առաջարկը։



Գերմանիայի դեմոկրատիզացիան կարող է իրականացվել միմիայն այն պարտավորությունների իրագործման միջոցով, որ ստանձնել են մեծ տերությունները պատերազմի ընթացքում և հիտլերյան Գերմանիայի դեմ հաղթանակ տանելուց հետո։

Սովետական առաջարկները ծառայում են խաղաղության և ընդհանուր անվտանգության շահերին, ինչպես գերմանական ժողովրդի շահերին։ Գերմանիայի դենացիֆիկացիայի և դեմոկրատիզացիայի առմպերի ավարտումը անհետաձգելի խնդիր է։

Դ. ԴԱՎԻԴՈՎ

* * *

